Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի բլոկնոտ

№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։



# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱՆ

Գ. Թադևոսյան

ՀԿԿ Երևանի քաղաքային Կոմիտեի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

*Էլեկտրաէներգիան ռացիոնալ կերպով օգտագործելը ժողովրդական տնտեսության զարգացման համար վիթխարի նշանակություն ունի։*

*Վերջերս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հատուկ նամակով դիմեց պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական բոլոր կազմակերպություններին և աշխատավորներին կոչ անելով խնայողաբար օգտագործել էլեկտրաէներգիան։*

*Անընդհատ տեխնիկական պրոգրեսի հիմքը կազմում է ժողովրդական տնտեսու-*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն— Երևան ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։



# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԷԼԵԿՏՐԱԷՆԵՐԳԻԱՆ

Գ. Թադևոսյան

ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչ

Էլեկտրաէներգիան ռացիոնալ կերպով օգտագործելը ժողովրդական տնտեսության զարգացման համար վիթխարի նշանակություն ունի։

Վերջերս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հատուկ նամակով դիմեց պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական բոլոր կազմակերպություններին և աշխատավորներին կոչ անելով խնայողաբար օգտագործել էլեկտրաէներգիան։

Անընդհատ տեխնիկական պրոգրեսի հիմքը կազմում է ժողովրդական տնտեսու-

թյան էլեկտրիֆիկացումը, առանց որի անհնարին է իրագործել արդյունաբերության հետագա կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։

Վ. Ի. Լենինը կարևորագույն տեղ տալով էլեկտրիֆիկացմանը, ասում էր. «Կոմունիզմը Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացումը»։

Սովետական Միությունը էլեկտրաէներգիայի արտադրությամբ գրավում է առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը աշխարհում։

Էլեկտրաէներգիան մեծ հեղաշրջում է մտցրել արդյունաբերության մեջ։ Արդյունաբերական մի շարք կարևոր ճյուղեր ստեղծված են էներգետիկ հզոր բազայի վրա։

Յոթնամյա պլանով նախատեսված է էլեկտրակայանների կարողությունը մեծացնել ավելի քան երկու անգամ և էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունը հասցնել 500—520 միլիարդ կիլովատ-ժամի։ Էլեկտրական էներգիայի նկատմամբ երկրի աճող պահանջմունքները ավելի լրիվ բավարարելու համար անհրաժեշտ է էներգետիկ կարողությունների ավելացմանը զուգընթաց ձգտել ապահովել յուրաքան-



չյուր կիլովատ-ժամի ռացիոնալ օգտագործումը։ Եթե մեր երկրում էլեկտրական էներգիան տնտեսենք թեկուզ մեկ տոկոսով, ապա կարելի կլինի խնայել տարեկան 2,6 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, որի արտադրության վրա ջերմային էլեկտրակայանները ծախսում են մեկ միլիոն տոննա ածուխ։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի նամակում բերվում են բազմաթիվ օրինակներ և տվյալներ, երբ ժողտնտխորհները և ձեռնարկությունների կոլեկտիվները լավ արդյունքների են հասնում էլեկտրական էներգիայի խնայողաբար ծախսման ասպարեզում։ Սակայն դրա հետ մեկտեղ շատ ձեռնարկություններում էլեկտրաէներգիան ծախսում են ոչ ռացիոնալ կերպով։

Արդյունաբերության մեջ և տրանսպորտում էլեկտրական էներգիայի անարտադրողական ծախսերը տարեկան հասնում են 11 միլիարդ կիլովատ-ժամի, որը գերազանցում է մեր երկրի հզորագույն էլեկտրակայաններից մեկի՝ Վոլգայի Վ. Ի. Լենինի անվան հիդրոէլեկտրակայանի տարեկան արտադրությունը։

Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, տրանսպորտի

կազմակերպությունների կոլեկտիվները ջերմորեն ընդունեցին ժողովրդական տնտեսության մեջ էլեկտրաէներգիայի ռացիոնալ օգտագործման մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի նամակը։

Ձեռնարկություններում սկիզբ է առնում նոր շարժում, սոցիալիստական լայն մրցություն, որի նշանաբանն է՝ պայքարել էլեկտրաէներգիայի խնայողության համար։

Իրագործելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի ցուցումը, գործարաններում, ֆաբրիկաներում և հիմնարկներում կոմունիստներից և անկուսակցական ակտիվից ստեղծվում են հանձնաժողովներ, որոնք պետք է պարտիական և տնտեսական կազմակերպություններին մշտական օգնություն ցույց տան էլեկտրական էներգիայի ռացիոնալ օգտագործման համար մղվող պայքարում։

Էլեկտրաէներգիայի խնայողաբար օգտագործման ուղղությամբ զգալի աշխատանք է կատարված Ալյումինի, Ս. Մ. Կիրովի անվան, Ավտոդողերի, Պոլիվինիլացետատ գործարանների, Նուրբ բրդյա գործվածքեղենի և Մահուդի կոմբինատի կոլեկտիվների կողմից։

Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը այս տարվա անցած ամիսներին տնտեսել է 646



հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Այս տարի գործարանում անցկացված են 5 կիլոմետր երկարությամբ ուժային կաբելներ։ Այդ բանը կարգավորել է գործարանի ենթակայանների միջև եղած բեռնվածությունը և իջեցրել է էլեկտրական էներգիայի կորուստների չափը ցանցերում։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի նամակը քննարկվեց բոլոր ցեխերի էլեկտրիկների և մեխանիկների ժողովում։ Ժողովում ելույթ ունեցողները ասում էին այն մասին, որ դեռևս էլեկտրաէներգիայի խնայողության գործում կան չօգտագործված հնարավորություններ։

Խտացրած օդի ծախսումը և նրա կորուստները նվազեցնելու հաշվին կարելի է տարեկան տնտեսել մոտ 800 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Շիկացման լամպերի որոշ մասի փոխարինումը ցերեկային լույսի լամպերով կհանգեցնի տարեկան 130 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողության։ Այս և այսպիսի մի քանի միջոցառումների շնորհիվ գործարանը կարող է 1960 թվականին տնտեսել ավելի քան 1 միլիոն 500 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Բնական գազի օգտագործումը արդյու-

նաբերական ձեռնարկություններում մեծ հեղաշրջում կառաջացնի և զգալի կերպով կընպաստի էլեկտրական էներգիայի խնայողաբար ծախսելուն։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանում կաթսայատունը, գումիրովկայի, էմալապատման և կրաքարի ցեխերում գազի օգտագործումը կտա տարեկան 700 հազար կիլովատ-ժամ էլեկտրական էներգիայի տնտեսում։ Արդյունաբերական ձեռնարկություններում ստեղծվում է էլեկտրաէներգիայի խնայողության ֆոնդ։

Ալյումինի գործարանի էլեկտրոլիզի ցեխի բրիգադիր Մկրտումյանի բրիգադը վաննաների բռնկումները նվազագույնի հասցնելու շնորհիվ, չորս օրվա ընթացքում խնայել է ավելի քան 4800 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կարբիդի ցեխի կոլեկտիվը մեկ շաբաթում էլեկտրաէներգիայի խնայողության ֆոնդի օգտին տնտեսել է 75,5 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և այլն։

Այս բոլորի հետ միասին հարկավոր է նշել, որ դեռևս մեր շատ ձեռնարկություններում էլետրաէներգիան օգտագործվում է ոչ ռացիոնալ ձևով։

Որոշ ձեռնարկությունների ենթակայաններում տեղադրված են ավելի հզոր տրանս-



ֆորմատորներ, քան պետք է իրենց։ Այդ ստեղծում է էլեկտրաէներգիայի կորուստ։ Երևանի քաղսովետի մասսայական կարի ֆաբրիկայում տեղադրված է 180 կիլովոլտ-ամպեր հզորություն ունեցող տրանսֆորմատոր, այն դեպքում, երբ այդ ֆաբրիկային պետք է ընդամենը 100 կիլովոլտ-ամպեր հզորություն ունեցող տրանսֆորմատոր։ «Ավտոխնամք» արտելի ենթակայանում տեղադրված է 180 կիլովոլտ-ամպեր հզորության տրանսֆորմատոր, 50-ի փոխարեն։

Էլեկտրական էներգիայի շռայլման պատճառ է նաև այն հանգամանքը, երբ մի շարք շինարարական կազմակերպություններում և ձեռնարկություններում չեն տեղադրվում հաշվիչներ։ Դրանցից կարելի է թվարկել Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության խոշոր պանելների գործարանը, «Պարենշին» տրեստի մեխանիկական բազան և այլն։

Էլեկտրասարքավորումների և էլեկտրական ցանցի անսարք վիճակը առաջացնում է էլեկտրաէներգիայի զգալի կորուստ։ Չի կարելի հանդուրժել, երբ մի շարք կառույցներում էլեկտրաէներգիան ձմռան ամիսներին մեծ չափերով շռայլվում է շենքերը չորացնելու և ջուր տաքացնելու համար։ Իսկ մի

շարք ձեռնարկություններում, խանութներում, պահեստներում օգտագործվում են ինքնաաարք էլեկտրական վառարաններ, որոնք կլանում են հսկայական քանակությամբ էլեկտրական էներգիա և հանդիսանում հրդեհի օջախներ։

Քաղաքի էլեկտրատնտեսությունը կարգավորելու համար նախատեսված է իրականացնել որոշ միջոցառումներ։

Մոտ ժամանակներս շահագործման կըհանձնվեն քաղաքային երկու ենթակայաններ՝ 26 կոմիսարների անվան և Ստալինյան շրջաններում, որոնք կապահովեն էլեկտրաէներգիայի անխափան մատակարարում։

Կիրականացվի փողոցների լուսավորման ավտոմատացումը։ Մեծ աշխատանք կկատարվի ձեռնարկություններում, փողոցներում և խանութներում շիկացման էլեկտրական լամպերը ցերեկային լույսի լամպերով փոխարինելու ուղղությամբ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նամակը մեծ հնարավորություններ է ստեղծում և ուղիներ նշում էլեկտրաէներգիան ավելի ռացիոնալ կերպով օգտագործելու մասին։

---



# ՅՈԹՆԱՄՅԱԿԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ

Ռ. Փաշինյան

Գյուտարարների, նորարարների և ռացիոնալիզատորների կոնֆերանսը մեծ հետաքրքրություն էր առաջ բերել Երևանի Կարի № 1 ֆաբրիկայում։ Ամբիոնի մոտ է նորարար Վահրամ Վարդանյանը։ Ունկնդիրները լռություն դարձած հետևում են նրա յուրաքանչյուր բառին։ Նրանցից շատերը իրենց մոտ զանազան նշումներ են կատարում, հարցեր տալիս, վիճում նրա հետ։ Բայց Վահրամը իրեն չի կորցնում, խոսում է հանգիստ, առանց շտապելու։

— Կատարված հաշվումները ցույց են տալիս,— ասում է նա,— որ ֆաբրիկան հնարավորություն ունի միայն կտորի ձևվածքի տնտեսման շնորհիվ կանխելու զգալի չափերի հասնող թանկարժեք նյութերի կորուստը։ Իմ կարծիքով պետք է վերջ տալ այն պրակտիկային, որ կտորի թոփը ձևարարին

է տրվում առանց նախօրոք իմանալու, թե տվյալ թոփի կտորը ինչպիսի չափսերի տակ պետք է ձևել, իսկ ձևարանը նյութը ձևում է բոլորը միևնույն չափսի տակ։ Դրա հետևանքով տարվա ընթացքում հազարավոր մետր կտոր վեր է ածվում լոսկուտի և վաճառվում շատ ցածր գներով։

Նորարար Վարդանյանի առաջարկությունները, որ նա անվանեց թոփչքային նորմա, երկար քննարկելուց հետո կոնֆերանսի մասնակիցները համոզվեցին, որ ձևարանում կարելի է կատարել կոստյումի չափսերի և հասակների կոմբինացիա և նախօրոք հաշվել, թե տվյալ կտորի թոփից տարբեր չափսի քանի՞ կոստյում կստացվի։ Հաշվումը կատարելուց հետո ձևարարները կարող են անսխալ իրականացնել այդ և կտորի կորուստը հասցնել մինիմումի։

Գյուտարարների, նորարարների և ռացիոնալիզատորների կոնֆերանսը հավանություն տվեց երիտասարդ մասնագետի նորարարական առաջարկությանը։ Արտադրատեխնիկական խորհուրդը որոշեց այն արմատավորել արտադրության մեջ։ Արդյունքը եղավ այն, որ ամեն մի կոստյում կարելու համար ֆաբրիկան տնտեսեց 6 սանտիմետր կտոր, իսկ աստառից՝ 11, խոլստից՝



8։ Եթե նախկինում ձևման ժամանակ ֆաբրիկան յուրաքանչյուր թոփից կորցնում էր նրա 10—11 տոկոսը, ապա այժմ այն 0,3-ից չի անցնում։ Այդ թիվը նրանց համար սահման չէ. ֆաբրիկայի աշխատողները ձգտում են ավելի նվազեցնել այն, բայց, ինչպես ինքը՝ Վահրամ Վարդանյանը, այնպես էլ աշխատանքի նրա ընկերները գոհ են, որ միայն այդ նորարարության շնորհիվ ֆաբրիկան մեկ տարում տնտեսեց 679 հազար ռուբլի։

Վահրամ Վարդանյանը թոփչքային նորման իրականացրեց նաև շալվարների արտադրության մեջ, որի շնորհիվ ֆաբրիկան տնտեսեց ավելի քան 300 հազար ռուբլի։

Արդեն տասը տարուց ավելի է, ինչ Վարդանյանը աշխատում է Երևանի Կարի № 1 ֆաբրիկայում, սկզբում էքսպերիմենտալ տեղամասում, որպես գծագրող բանվոր, իսկ այնուհետև՝ գծաորող ինժեներ։ Այդ տարիներին նա բազմաթիվ ռացիոնալիզատորական և նորարարական առաջարկություններ է արել, որոնց մեծ մասը ներդրվել է արտադրության մեջ։ Վարդանյանը այժմ զբաղված է կոստյումներ կարելու և ձեռքի մի շարք աշխատատար պրոցեսներ մեքենայացնելու և օժանդակ նյութերի խնայողու-

թյան գործով։ Այդ նպատակի համար Վարդանյանը փորձի փոխանակման կարգով եղել է Մոսկվայի, Լենինգրադի, Ռիգայի, Կույբիշևի, Ուլյանովսկի առաջավոր կարի ֆաբրիկաներում։

Ֆաբրիկայի նորարարները, գյուտարարները և ռացիոնալիզատորները շատ են։ Ահա նրանցից բրիգադիր-մեխանիկ Կարապետ Հովհաննիսյանը, հրահանգչի օգնական Սմբատ Սմբատյանը, բանվորներ՝ Ղազարոս Մխոյանը, Էմմա Հայրյանը, Ռոզա Հրաչինյանը, գլխավոր մեխանիկ Անդրանիկ Բարսեղյանը և ուրիշներ։ Բոլորին դժվար է թվարկել, նրանք 50 հոգուց ավելի են, որոնք միայն այս տարի արել են ավելի քան 100 նորարարական առաջարկություն։ Դրանցից 31 առաջարկություն արդեն արմատավորվել է արտադրության մեջ, իսկ մնացածը արտադրա-տեխնիկական խորհրդի կողմից ուսումնասիրվում է։

Բացի Հայկական ՍՍՌ-ի Ժողտնտխորհի և ՀԱՄԿԽ-ի կողմից չորրորդ եռամսյակը գյուտարարների, ռացիոնալիզատորների և նորարարների կոնկուրս հայտարարելուց, ֆաբրիկայի դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը արտադրա-տեխնիկական խորհրդի հետ միասին առավել աչքի



ընկնող գյուտարարների, նորարարների և ռացիոնալիզատորների համար սահմանել են հատուկ մրցանակներ և նրանց ուշադրությունը հրավիրել հատկապես հում նյութի խնայողության, բանվորական տեղի կազմակերպման, օպերացիաների մշակման, մշակման տեխնոլոգիայի փոփոխության, ձեռքի տարբեր աշխատանքների մեքենայացման հարցերի վրա։ Այդ նպատակով վերանայվել են թեմատիկ պլանները, նորարարների և ռացիոնալիզատորների առջև դրվել կոնկրետ խնդիրներ։

Վերջերս տեղի ունեցած գյուտարարների, ռացիոնալիզատորների և նորարարների կոնֆերանսում այդ աշխատանքների ընթացքի մասին զեկուցումով հանդես եկավ ֆաբրիկայի արտադրա-տեխնիկական խորհրդի նախագահ՝ գլխավոր ինժեներ Ս. Տիգրանյանը։ Ներկա գտնվողները միահամուռ կերպով իրենց սրտին մոտ ընդունեցին նրա հետևյալ խոսքերը.

— Մանրամասն հաշվելով մեր ֆաբրիկայի ներքին ռեզերվներն ու հնարավորությունները և արտադրության մեջ ներդրվող գյուտարարական, ռացիոնալիզատորական և նորարարական առաջարկությունները մենք ի վիճակի ենք յոթնամյակը կատարել ժամկետից շուտ՝ վեցուկես տարում։

---

## Սերմնաբուծությունը բարձր բերքի գրավականն է

Հրաչուհի Աղաջանյան
գյուղատնտես

Գյուղատնտեսական կուլտուրաներից բարձր բերք ստանալու գործում, հողի մշակման, պարարտացման և այլ միջոցառումների հետ միասին խոշոր նշանակություն ունի լավորակ սերմացուն։

Գյուղատնտեսական տարբեր գոտիների համար նույն սերմացուն լավագույն համարվել չի կարող։ Այս կամ այն կուլտուրայի տվյալ տեսակը մի գոտում կարող է բարձր բերք տալ, իսկ մյուսում՝ ընդհակառակը։ Այդ պատճառով էլ լավորակ է այն սերմացուն, որը տվյալ բնակլիմայական պայմաններում բարձր բերք է տալիս։

Մինչ գիտական սերմնաբուծության ստեղծումը հողագործները ցանել են համեմատաբար բարձր բերքատու տեսակների սերմեր, իսկ ցածր բերքատու և անորակ սերմերը հե-



ռացրել են սերմացուի միջից։ Այդ ճանապարհով հողագործը ստեղծել և պահպանել է տվյալ պայմաններին հարմարված բարձր բերքատու տեսակներ։

Մինչ օրս էլ գոյություն ունեն ժողովրդական սելեկցիայի (լավագույն տեսակներ ընտրելու) ճանապարհով մեզ հասած հացահատիկի, բանջարեղենի, բազմամյա խոտաբույսերի տեսակներ։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման մեծ պահանջի հետևանքով, այդ տեսակները այսօր չեն բավարարում սոցիալիստական երկրագործությանը։ Հայաստանում սերմնաբուծությամբ զբաղվող գիտաշխատողները տվել են Արարատյան դաշտի պայմաններում բարձր բերքատու աշնանացան ցորենի նոր տեսակ (Արտաշատի—42), որը իր բարձր բերքատվության և հացաթխման որակի շնորհիվ այդ շրջաններից դուրս է մղել մինչ այդ մշակվող տեղական տեսակները։ Արտաշատի—42 տեսակը, որ այժմ մշակվում է Արարատյան դաշտավայրի շրջանների բոլոր կոլտնտեսություններում, ամեն մի հեկտարից 25—30 ցենտներ բերք է տալիս, նախկինում մշակվող տեսակների 15—20 ցենտների դիմաց։

Լենինականի սելեկցիոն կայանի և երկրագործության ինստիտուտի գիտաշխատողները ավել են այդպիսի լավագույն տեսակներ, որոնք Հայաստանի համապատասխան գոտիներում տալիս են բարձր բերք, տեխնոլոգիական բարձր ցուցանիշներով։ Այդպիսի տեսակներից է լեռնային—22 աշնանացան ցորենը, որը շրջանացվել է բարձր լեռնային գոտու կոլտնտեսություններում (Սևանի ավազանում)։ Նովոուկրաինկան հրաշալի արդյունքներ է տալիս Շիրակի հարթավայրի և Նոյեմբերյանի շրջանների կոլտնտեսություններում։ Ցորենի լավագույն տեսակներ են Ալմարգարիտը և Գայանեն։

Այժմ Լենինականի սելեկցիոն կայանը և գիտահետազոտական ինստիտուտները մեծ աշխատանք են տանում գարնանացան բարձրորակ տեսակներ ստեղծելու ուղղությամբ։

Հացահատիկի նոր բարձր բերքատու տեսակ ստանալու երկու ճանապարհ կա. մեկը՝ ընտրության, մյուսը՝ խաչաձև փոշոտման-հիբրիդացման միջոցով։

Ընտրության միջոցով աշխատանքը կատարվում է հետևյալ կերպ. տեղական տեսակների խառնուրդներից վերցնում են լավագույնը։ Այսպես. հասկերի մեջ կան մեծ ու փոքր, կարմիր ու սպիտակ հասկեր,



ընտրում են դրանցից խոշորները և այն բազմացնում։ Պարզ է, որ նման հասկերի ամբողջ սերունդը կլինի խոշորահատ և եթե այդ սերունդը իր բերքատվությամբ ու որակով արժանի է ուշադրության, ապա դա բազմացվում և մշակվում է հետագա տարիներին։

Խաչաձևման համար ընտրում են այնպիսի տեսակներ, որոնք տնտեսության մեջ ունեն դրական ցուցանիշներ (բերքատու, վաղահաս, դիմացկուն և այլն)։ Պետք է նկատի ունենալ, որ խաչաձևման միջոցով ստացված տեսակներն ավելի երկար են դիմանում, քան ինքնափոշոտվող տեղական տեսակների խառնուրդներից ստացվածները։

Մասնագետի կամ գիտնականի կողմից ստացված նոր տեսակը բազմացվում է գիտահետազոտական հիմնարկի կամ սելեկցիոն կայանի հողամասերում։ Սերմի որոշ քանակ ստեղծելուց հետո այն ենթարկվում է փորձարկման։ Եթե սերմի տվյալ տեսակը ունենում է բերքատվության և տեխնոլոգիական բարձր ցուցանիշներ, ապա նա ենթարկվում է որոշ կոլտնտեսությունների արտադրական փորձարկմանը։ Հետագայում բազմացնելու նպատակով ցրվում են էլիտային տնտեսությունները։

Միայն մեքենաներն ու գործիքները չեն, որ հնանում են, սերմի տեսակները նույնպես արտադրության մեջ երկար մնալով հնանում են, պակասեցնելով իրենց բերքատվությունը։

Էլիտային տնտեսություններից ստացած սերմերը բազմացնելու և արտադրության մեջ արմատավորելու գործով մեր ռեսպուբլիկայում զբաղվում են 31 սերմնաբուծական կոլտնտեսություն, որոնք բազմացնում են այնքան սերմ, որը ապահովի կոլտնտեսային սերմնադաշտերին։

Սերմնաբուծության վերը նշված մեթոդը բավական երկար ժամանակ է պահանջում (7—8 տարի) մինչև սերմացուն մտնի արտադրության մեջ։

Սերմնաբուծությունը երկարատև և համառ աշխատանք է պահանջում։ Բասարգեչարի շրջանի Նորակերտի էլիտա-սերմնաբուծական կոլտնտեսությունը, որը լավագույն տնտեսություններից մեկն է, շնորհիվ տեսակային լավորակ սերմերով ցանք կատարելուն, անընդհատ բարձր բերք է ստանում, որը հասնում է 26 ցենտների, իսկ միայն սերմնադաշտերից՝ 35—36 ցենտներ բերք։ Հրազդանի շրջանի Ցամտան գյուղի սերմնաբուծական կոլտնտեսությունը ստանում է



շրջանում ամենաբարձր բերքը, շնորհիվ այն բանի, որ ցանքը կատարում է տեսակային բարձրորակ սերմերով։

Այդպիսի լավագույն տնտեսություններ են Սիսիանի շրջանի Նորավանի, Կոտայքի շրջանի Ջառի, Ախուրյանի շրջանի Ղարիբջանյանի և այլ կոլտնտեսությունները։

———

# Ինչպես անցկացնել զրույց ընդհանուր և լրիվ զինաթափման մասին

Վ. Ենգիբարյան

*Ունկնդիրների հետ այս թեմայով զրույց անցկացնելիս հարկավոր է սկզբում պարզաբանել, որ Սովետական Միության արտաքին քաղաքականության հիմքում ընկած է բոլոր երկրների հետ, անկախ նրանց սոցիալական կարգից, լենինյան խաղաղ համագործակցության սկզբունքը։ Սովետական կառավարությունը միջազգային ասպարեզում կոնկրետ գործողություններով բազմիցս հաստատել է իր անսասան հավատարմությունը լենինյան այդ սկզբունքին։ Օրինակ, Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության փայլուն ապացույց հանդիսացավ ընկեր Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցը։ Վկայակոչելով պատմական այդ այցը, ագիտատորը պարզաբանում է, որ նա խոշորագույն նշանակություն ունեցավ գտնելու լավագույն հնարավորություններ*



*բոլոր վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով կարգավորելու համար։ Իսկ «սառը պատերազմի» տարիներին, ինչպես հայտնի է, նման հարցեր քիչ չեն կուտակվել։*

*Միջազգային ամենակարևորագույն պրոբլեմը զինաթափումն է, որով շահագրգռված է ամբողջ մարդկությունը։ Այս միտքը ավելի պարզաբանելու նպատակով, ագիտատորը ունկնդիրներին հիշեցնում է, որ պատահական չէր սովետա-ամերիկյան հայտարարության մեջ նշված այն խոսքերը, թե զինաթափման պրոբլեմը ներկայումս ամենակարևորագույն հարցն է։*

*Ժողովուրդները հոգնել են ապրելով սպառնացող նոր պատերազմի առաջացման մշտական վախի ու սարսափի մեջ, նրանք պահանջում են իրենց կառավարություններից գտնել ուղիներ՝ երկրի վրա երկարատև ու կայուն խաղաղություն հաստատելու համար։ Այժմ այդ պահանջն արտահայտվում է ավելի վճռական, քանի որ անարգել ռազմական մրցավազքը պետությունների միջև ստեղծում է անվստահության և կասկածամտության մթնոլորտ, որը հղի է նոր ռազմական պայթյունի վտանգով։ Նման պայթման հետևանքները կործանարար կլինեն ամբողջ մարդկության համար։ Մեր դարում ոչ*

մի տարածություն չի անջատում մեկ պետություն մյուսից, հեռավորությունը չի կարող երաշխիք ծառայել անվտանգության համար։ Ագիտատորը ունկնդիրներին հիշեցնում է, այն փաստը, որ ոչնչացման զենքերն այժմ հասել են այնպիսի հզորության, իսկ նրանց տեղափոխումն այնպիսի արագության, որ պատերազմի ժամանակ թիկունքի և ճակատի միջև ոչ մի տարբերություն չի լինի։ Բավական է ասել, որ մեկ ջրածնային մեծ ռումբի պայթման ժամանակ անջատվում է այնքան կործանիչ էներգիա, որը գերազանցում է բոլոր պայթուցիկ նյութերին, որ պատրաստվել է ամբողջ աշխարհում համաշխարհային երկրորդ պատերազմի ընթացքում։

Արդյո՞ք թույլատրելի է մարդկությանը պահել այդ ահավոր զենքի մշտական սպառնալիքի տակ։ Ինքնին հասկանալի է, որ, ոչ։

Սովետական կառավարությունը վաղուց առաջարկել է փրկել մարդկությանը նոր կործանարար պատերազմի աղետից։ Նա բազմիցս առաջարկություններ է մացրել ատոմային և ջրածնային զենքն արգելելու, զինաթափման և զինված ուժերի կրճատման մասին։ Սովետական կառավարությունը վերջին տարիների ընթացքում գործնականում օրինակ է ցույց տվել միակողմանիորեն կրր-



ճատելով իր զինված ուժերն ավելի քան 2 միլիոն մարդով։

Որպեսզի արևմտյան տերությունների ոչ խաղաղասիրական քաղաքականությունը հանգամանորեն բացահայտվի, ագիտատորը ունկնդիրներին տեղյակ է պահում այն մասին, որ զինաթափման պրոբլեմը երկար տարիների ընթացքում քննարկվելով Միավորված Ազգերի Կազմակերպությունում միշտ էլ հանդիպել է արևմտյան տերությունների դիմադրությանը և մնացել չլուծված։ Արևմտյան տերությունները մասսայական ոչընչացման զենքի պաշարներ են կուտակում, ստեղծում են ագրեսիվ նորանոր պակտեր ու բլոկներ, կառուցում են օտար տերիտորիաներում ռազմական բազաներ, ավելի ու ավելի շատ դրամական միջոցներ են հատկացնում ռազմական կարիքների համար

Այս տարվա սեպտեմբերի 18-ին Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայում ընկեր Ն. Ս. Խրուշչովը Սովետական կառավարության անունից առաջարկեց ընդհանուր և լրիվ զինաթափում։ Գլխավոր Ասամբլեան միաձայն որոշեց քննարկել այդ հարցը առաջիկա սեսիայում։

Ըստ ընդհանուր և լրիվ զինաթափման ծրագրի նախատեսվում է ցրել ամբողջ ռազ-

մական ուժերը և արգելել նրանց վերականգնումը, լիկվիդացնել բոլոր տեսակի ռազմական տեխնիկան, արգելել միջուկային, հրթիռային, քիմիական և բակտերիոլոգիական զենքը և ոչնչացնել այդ զենքի տեսակները, լիկվիդացնել բոլոր տեսակի ռազմական բազաները և ռազմական ծառայությունները, գլխավոր շտաբները և ռազմական մյուս հիմնարկությունների ու կազմակերպությունները, արգելել ռազմական նպատակների համար դրամական միջոցների հատկացումը։

Սովետական առաջարկությունները նախատեսում են, որ բոլոր երկրներում օրենսդրական կարգով պետք է արգելվեն ամեն տեսակ ռազմական պրոպագանդան և երիտասարդության ռազմական ուսուցումը։ Իսկ ներքին կարգը և քաղաքացիների անձնական անվտանգությունը պահպանելու համար պետությունները կարող են ունենալ միայն խիստ սահմանափակ ոստիկանության ուժեր՝ (միլիցիա), որոնք զինված կլինեն հրաձգային թեթև զենքով։

Հայտնի է, որ արևմտյան տերությունները բազմիցս խոչընդոտներ հարուցեցին զինաթափման վերաբերյալ համաձայնության գալուն։ Այդ կապակցությամբ ագիտատորը



ունկնդիրներին պարզաբանում է արևմտյան տերությունների սխալ դիրքը նաև վերահսկողության հարցի մասին, երբ նրանք պահանջում էին միակողմանիորեն վերահսկողություն սահմանել ուրիշ տերությունների զինված ուժերի նկատմամբ։ Դա մի փորձ էր վերահսկողության անվան տակ հետախուզական տվյալներ հավաքել հակառակորդ պետությունների վերաբերյալ, ամենից առաջ Սովետական Միության վերաբերյալ։ Այնինչ սովետական առաջարկությունները ընդհանուր և լրիվ զինաթափման մասին նախատեսնում են ստեղծել իսկական վերահսկող օրգան, որի կազմում լինեն բոլոր պետությունները։

Ելնելով ընդհանուր խաղաղությունն ապահովելու շահերից, Սովետական Միությունը առաջ է քաշել զինաթափման պրոբլեմը լուծելու արմատական ծրագիր։ Արևմտյան տերությունները պատրաստակամություն չեն դրսևորում ընդհանուր և լրիվ զինաթափման առաջարկություններն ընդունելու վերաբերյալ։

Սովետական նոր առաջարկությունները, որոնք ուղղված են ընդհանուր խաղաղության ամրապնդմանը, երկրագնդի բոլոր մասերում մեծ հետաքրքրությամբ ընդունվեցին։

Այդ առաջարկությունների հավանություն տվեցին աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ, անկախ նրանց քաղաքական համոզմունքներից, լեզվից ու գույնից, բոլոր նրանք, որոնց թանկ է մարդկության ապագան։

Այլ կերպ լինել չէր կարող։ Սովետական առաջարկությունները բոլոր ժողովուրդների առջև բաց արեցին կայուն խաղաղության հասնելու հեռանկարները։

Կյանքում իրականացնելով սովետական առաջարկությունները, մարդկությունը կըփրկվի նոր պատերազմի մշտական սարսափներից, մարդկության ուսերից դեն կշպրտվի ռազմական մրցավազքի ծանր բեռը և կբարձրանա ժողովուրդների բարեկեցությունը։

Ագիտատորը խոսելով այն մասին, որ ռազմական մրցավազքը իր հետ բերում է հարկերի աճ, ժողովրդական սպառման ապրանքների գների աճ և աշխատավարձի իջեցում, նշում է կոնկրետ փաստ, թե ինչպես այժմ երկրագնդում խաղաղ հանրօգուտ աշխատանքից կտրվել են ավելի քան 100 միլիոն մարդ, որոնք զինվորական ծառայություն են կատարում կամ աշխատում են ռազմական արդյունաբերության մեջ։ Իսկ այդ մարդիկ ամենաաշխատունակ աշխա-



տողներ են, որոնք կարող են իրենց երկրների բարեկեցության բարձրացման գործին մեծ օգուտ բերել։ Միայն վերջին 10 տարում պետությունները ռազմական կարիքների համար ծախսել են այնքան միջոցներ, որով կարելի էր կառուցել 150 միլիոն բնակելի տուն և այնտեղ տեղավորել հարյուրավոր միլիոն մարդկանց։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը սրում է այն հանգամանքի վրա, որ կենսագործելով ընդհանուր և լրիվ զինաթափման սովետական առաջարկները մարդիկ դրամական վիթխարի միջոցները կտրամադրեին ոչ թե մահաբեր զենք կուտակելու համար, այլ կկառուցեին դպրոցներ, հիվանդանոցներ, բնակելի տներ, ճանապարհներ, մարդկանց կարիքները բավարարելու համար ավելի կզարգացնեին կենսամթերքների և արդյունաբերական ապրանքների արտադրությունը։ Նրանք այդ միջոցները կօգտագործեին գները իջեցնելու, հարկերը պակասեցնելու նպատակով, կթեթևացնեին մարդու կյանքի պայմանները, կազատագրեին նրան իր ապագայի նկատմամբ սարսափներից։

Ընդհանուր և լրիվ զինաթափումը խոշոր նշանակություն կունենար թույլ զարգացած

*երկրների համար։ Տնտեսապես բարձր զարգացած երկրները հնարավորություն կունենային նրանց ավելի գործուն օգնություն ցույց տալու։ Այդ կապակցությամբ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշել է, որ «Սովետական Միությունը պատրաստ կլիներ նաև մյուս տերությունների հետ համատեղ մասնակցել այսպես կոչված թույլ զարգացած երկրներին տնտեսական օգնություն ցույց տալուն՝ այն միջոցների որոշ մասի օգտագործման միջոցով, որոնք կգոյանային Սովետական Միությունում և մյուս պետություններում, եթե կնքվեր զինաթափման և ռազմական բյուջեների կրճատման միջազգային համաձայնագիր»։*

*Զրույցի վերջում ագիտատորը խոսում է այն մասին, որ այժմ Սովետական Միությունը ավելի հզոր է ու հեղինակավոր, քան երբևիցէ, որ առանց նրա մասնակցության հնարավոր չէ լուծել միջազգային ո՛չ մի կարևոր հարց։ Սովետական Միության հետ միասին համաքայլ ընթանում են եղբայրական սոցիալիստական երկրները։*

*Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը մոտ է և հասկանալի բոլոր ժողովուրդներին։*

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

# ՔԱՂԼՈՒՍԿԱԲԻՆԵՏԸ ՕԳՆՈՒՄ Է ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

Գ. Բարսեղյան

*Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում ավելի քան 400 ագիտատոր մասսայական-բացատրական աշխատանք են կատարում։ Նրանք կոլտնտեսականներին հանգամանորեն պարզաբանում են ՍՄԿՊ XXI համագումարի կողմից գյուղատնտեսության աշխատողների առջև դրված խնդիրները, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ և ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցի նշանակությունը խաղաղության ամրապնդման գործում, ՍՄԿՊ Դեկտեմբերյան պլենումի նյութերը, ՍՍՌՄ միջազգային և ներքին դրության հարցերը և այլն։ Ագիտատորները լայնորեն տարածում են առաջավորների աշխատանքի փորձը։*

*Հայտնի է, որ ագիտատորների աշխատանքը ավելի արդյունավետ է լինում, երբ*

նրանց սիստեմատիկ օգնություն են ցույց տալիս զրույցներ նախապատրաստելու և անցկացնելու գործում, երբ ապահովում են նրանց համապատասխան գրականությամբ ու դիտողական նյութերով։

Ագիտատորներին մշտական օգնություն ցույց տալու գործում ուսանելի աշխատանք է կատարում Ախուրյանի շրջանի պարտշրջկոմի քաղլուսկաբինետը, որտեղից ագիտատորները անհրաժեշտ օգնություն են ստանում իրենց հետաքրքրող հարցերի վերաբերյալ։ Ագիտատորների համար ընտրվում և քաղլուսկաբինետում կենտրոնացվում են անհրաժեշտ նյութեր, գրականություն, դիագրամաներ, սխեմաներ և դիտողական շատ այլ նյութեր։ Օրինակ, քաղլուսկաբինետը ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների, ՍՍՌՄ Գերագույն Սովետի նյութերի մասսայականացման ժամանակ գործնական օգնություն ցույց տվեց ագիտատորներին, ավելի ընդարձակելով իր կապերը նրանց հետ։ Այդ օրերին քաղլուսկաբինետ էին գալիս տասնյակ ագիտատորներ և ստանում իրենց անհրաժեշտ նյութեր ու գոհացուցիչ պատասխաններ բազմաթիվ հարցերի վերաբերյալ։ Ագիտատորների համար քաղլուսկաբինետում և տեղերում սիս-



տեմատիկաբար անցկացվում էին խորհրդակցություններ, սեմինարներ։ Քաղլուսկաբինետը հաճախակի ընդհանրացնում և մասսայականացնում է լավագույն ագիտատորների փորձը, ագիտկոլեկտիվների ղեկավարների համար ամսական մեկ անգամ սեմինար պարապմունք անցկացնելը դարձել է սովորական երևույթ։ Վերջին ամիսներին տեղի են ունեցել պարտիայի XXI համագումարի որոշումները գյուղատնտեսության վերելքի, ՍՄԿՊ XXI համագումարի միջազգային պատմական նշանակության, սոցիալիստական մրցության, ընկեր Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցելության, խաղաղությունը պաշտպանելու, ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը պատվով դիմավորելու և ուրիշ թեմաների շուրջ։

Քաղլուսկաբինետը որոշակի աշխատանք է տանում ագիտատորների քաղաքական պատրաստականության բարձրացման, նրանց կուլտուրական մտահորիզոնի ընդլայնման ուղղությամբ։ Ագիտատորների համար դասախոսություններ, զեկուցումներ են կազմակերպվել «ՍՄԿՊ-ն սովետական ժողովրդի կազմակերպիչն ու ոգեշնչող ուժն է», «Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի 42-րդ տարեդարձը», «ՍՍՌՄ ժո-

զոհվորդների բարեկամությունը», «Սովետական երիտասարդի բարոյական կերպարը», «Տնտհաշվարկը և նրա նշանակությունը» և այլ թեմաներով։

Այսպիսի դասախոսություններ, զեկուցումներ և զրույցներ անց են կացվում ոչ միայն քաղլուսկաբինետում, այլև կոլտնտեսություններում՝ ագիտ-կոլեկտիվների համար։ Քաղլուսկաբինետում կան հատկապես ագիտատորների համար ընտրված նյութերի ցուցափեղկեր, որտեղ կտրված և դրված են թերթերից առանձին հոդվածներ, ինչպես նաև ամսագրեր, զանազան հարցերի վերաբերյալ հանրամատչելի բրոշյուրներ և այլն։ Քաղլուսկաբինետում կան նաև դիտողական նյութեր՝ շրջանի կոլտնտեսությունների ձեռք բերած հաջողությունների մասին։

Երբ Ախուրյանի շրջանի առաջավոր մեխանիզատորները, ինչպես նաև կոլտնտեսականները արձագանքեցին Գագանովայի հայրենասիրական նախաձեռնությանը և սկսեցին աշխատել նրա օրինակով, քաղլուսկաբինետը ուսումնասիրեց շրջանի մի շարք կոլտնտեսությունների աշխատանքի փորձը, պատրաստեց դիագրամաներ, որոնք ցույց են տալիս, թե ինչպես շրջանի մեխա-



նիզատորներն ու առանձին աշխատողներ Գագանովայի օրինակով իրենց ղեկավարած լավագույն բրիգադից, օղակից, ֆերմայից գնում են ետ մնացող բրիգադաներն ու օղակները, նրանց առաջավորներին հասցնելու նպատակով։ Այս ուղղությամբ քաղլուսկաբինետը հրավիրել է ագիտատորների խորհրդակցություն, որտեղ կարդացվել է՝ «Ագիտատորը այս օրերին» թեմայով զեկուցում, նշելով կոնկրետ միջոցառումներ աշխատավորության մեջ Գագանովայի օրինակը մասսայականացնելու վերաբերյալ։

Ագիտատորները հաճախ քաղլուսկաբինետի օգնությանն են դիմում զանազան հարցերով։ Այսպես, օրինակ, Վահրամաբերդում աշխատում են մեծ թվով երիտասարդներ, նրանցից ոմանք լավ չէին հասկանում կոլտնտեսության ներքին կարգ ու կանոնը, խախտում էին աշխատանքային կարգապահությունը։ Ագիտատոր Ա. Մովսիսյանը այդ հարցով դիմեց քաղլուսկաբինետի վարիչին, որը համապատասխան նյութեր տալուց հետո խորհուրդ տվեց երիտասարդների համար զրույցներ անցկացնել սովետական հայրենասիրության մասին և մասսայականացնել երիտասարդ առաջավոր կոլտնտեսականների փորձը։ Զրույցի ընթացքում օգ-

տագործվեց Մարմաշեն գյուղի երիտասարդության աշխատանքի փորձը։ Օրինակներ բերվեցին նաև Ախուրյան գյուղի կոլտնտեսությունից, որտեղ այս տարի երիտասարդության լավագույն աշխատանքի շնորհիվ կոլտնտեսությունը անցած տարվա համեմատությամբ յուրաքանչյուր հեկտարից 100 ցենտներով ավելի շաքարի ճակնդեղ ստացավ։

Հայկավանի ագիտկոլեկտիվի ղեկավար Ա. Եղիազարյանին քաղլուսկաբինետը օգնեց կոլտնտեսությունում ցուցադրական ագիտացիա կազմակերպելու գործում։ Ախուրյանի կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար Համբարյանը քաղլուսկաբինետ եկավ խորհուրդ ստանալու այն մասին, թե ինչպես պետք է օգնել ագիտատորներին, որպեսզի նրանք իրենց զրույցների ընթացքում ընդհանուր քաղաքական հարցերը կապեն կոլտնտեսության առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։ Վերջինս նույնպես գոհ մնաց քաղլուսկաբինետից։

Քաղլուսկաբինետը մեծ ուշադրություն է դարձնում լավագույն ագիտատորների փորձի ուսումնասիրմանը, ընդհանրացմանն ու մասսայականացմանը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սովետական Միության Կոմունիստական պարտիան կոմունիզմի հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ճառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—289, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպողն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, *ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

## 2. Երկրի էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների կենսագործումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Սոցիալիզմի նյութական հիմքը և Ռուսաստանի էլեկտրիֆիկացիայի պլանը, *Երկեր, հատոր 32, էջ 591—592, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Համառուսաստանյան էլեկտրատեխնիկական 8-րդ համագումարի նախագահությանը, Երկեր, հատոր 33, էջ 35—36, Հայպետհրատ, 1952։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ էներգետիկ շինարարության Համամիութենական խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թվականի դեկտեմբերի 15-ի համարում։

Էներգետիկ շինարարությանը նվիրված Համամիութենական խորհրդակցություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 28-ի համարում։

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Ճառ Աթարբեկյանգէսի բացմանը նվիրված միտինգում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 6-ի համարում։

## 3. Ավելի շատ գործվածքներ, տրիկոտաժե և տեքստիլ արտադրանք աշխատավորներին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Տեքստիլ արդյունաբերության հետագա վերելքի միջոցառումների մասին, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։

Տեքստիլագործները գրավում են յոթնամյակի բնագծերը, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի դեկտեմբերի 12-ի համարում։



## 4. Ռացիոնալ օգտագործենք էլեկտրաէներգիան

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի նամակը պարտիական, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների, գիտահետազոտական և նախագծային ինստիտուտների, կոնստրուկտորական բյուրոների, կուլտուր-կենցաղային հիմնարկների, ժողտնտխորհների, մինիստրությունների և գերատեսչությունների աշխատավորներին ժողովրդական տնտեսության մեջ էլեկտրական էներգիայի ռացիոնալ օգտագործման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 26-ի համարում։

Համաժողովրդական գործ, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի դեկտեմբերի 1-ի համարում։

## 5. Խնայողաբար ծախսենք գունավոր մետաղները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ժողովրդական տնտեսության մեջ պղնձի, նիկելի անագի, կապարի և ուրիշ գունավոր մետաղների խնայողաբար ծախսման մասին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական

կոմիտեի ՆԱՄԱԿԸ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի դեկտեմբերի 17-ի համարում։*

Խնայողություն թե մեծ, թե փոքր գործերում. *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1959 թվականի դեկտեմբերի 9-ի համարում։*

### 6. Արտադրության նորարարները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, *Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Արմատավորել առաջադիմական մեթոդները, կառուցել խնայողաբար, նաև, արտասանած էներգետիկ շինարարության Համամիութենական խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 28-ին։*

Նորարարները, *զրույց, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 22-րդ համարում։*

### 7. Ժամանակին ավարտենք գյուղատնտեսական գործիքների նորոգումը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Գյուղատնտեսության մեքենայացումը, ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, *Հայպետհրատ, 1956։*

Տրակտորների և մյուս մեքենաների նորոգումը, *զրույց, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 2-րդ և 3-րդ համարներում։*



Ժամանակին կատարենք նորոգումները, *հոդված տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 11-րդ համարում։*

### 8. «Հարուստ նեկտարի համար»

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

«Հարուստ նեկտարի համար» *ռեսպուբլիկական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ՝* ուղղված ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների, սովխոզների և ՆՏ կայանների բոլոր պատանիներին և աղջիկներին, *տպագրված «Ավանգարդ»-ի 1959 թվականի դեկտեմբերի 10-ի համարում։*

*Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ*— Լայնորեն ծավալել «Հարուստ նեկտարի համար» *սկսված շարժումը, հոդված, տպագրված «Ավանգարդ»-ի դեկտեմբերի 12-ի համարում։*

### 9. Անխախտ է եղբայրական սոցիալիստական երկրների բարեկամությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ, Հունգարիայի Սոցիալիստական Բանվորական պարտիայի 7-րդ համագումարում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի դեկտեմբերի 2-ի համարում։*

Եվրոպայի կոմունիստների մարտական կոչը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի դեկտեմբերի 8-ի համարում։*

# ՑԱՆԿ

## «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ 1959 ԹՎԱԿԱՆԻՆ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

## Ագիտացիոն աշխատանքի փորձից





## Օգտագործիր զրույցի ժամանակ
### (թվեր ու փաստեր)



## Միջազգային թեմաներ

## Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում



## Պատասխան ագիտատորների հարցերին







## Օգնություն ագիտատորներին



## Մեթոդական օգնություն ագիտատորներին



## Գյուղատնտեսական թեմաներ

## Արդյունաբերական թեմաներ





## СОДЕРЖАНИЕ



---

Պատ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## Արդյունաբերական թեմաներ







---

## СОДЕРЖАНИЕ

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
**«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի**
1960 ԹՎԱԿԱՆԻ
**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ**

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ:*

*2 ամիսը— 1 ռ. 50 կ.*

*6 ամիսը— 9 ռ.*

*12 ամիսը— 18 ռ.*

*Մեկ համարը 75 կոպեկ*

*ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ*


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 24** **1959 г.**

*ՎՖ 08985* *Պատվեր 860* *Տիրաժ 8535*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8:*
*Գինը 50 կոպ.:*